Ըստ Գանձակեցիին, վանքի մեծութը եղած է Յովհաննէս Արմանեցի եւ բարերարը՝ Գուքթաս կոչուած անձ մը: Այս շէնքին շինարարական կարեւորութիւնը կը կայանայ իր ներքին կառոյցին մէջ: Շատ զօրաւոր կառուցուած է խաչաձեւուող քարատաշ կամարակապներով, որոնք շէնքին ամրութիւնը կ'ապահովեն: Իւրաքանչիւր կամար կը մեկնի կառոյցին անշարժ անկիւնէ մը, կը հանգչի կիսասիւներու եւ երկու ազատ քառանկիւն սիւներու վրայ, որոնք սրահը կը զատեն, առանց ներքին ծաւալին շարունակականութիւնը անջատելու: Այսքան մեծ ծաւալ մը (9×12) ծածկելու համար միայն երկու ազատ սիւներ գործածուած են:

Տածքը հաստատօրէն խաչաձեւուած կամարներով սերտօրէն շղթայաւորուած է, որոնք արդէն սրահին 2/3ը կը ծածկեն: Զարդերը շատ զուսպ, մարդու հասակի բարձրութեան կը հասնին:

Շէնքին երկու հաւասար մասերու բաժանումը աւելի կը շեշտուի լուսաւորութեան բացառիկ պայմաններու տակ, լոյսը կը ստացուի, զէնիթային փոքր բացուածքներով որոնք ծածքին կեդրոնը զետեղուած են:

Դգմբէթի ծայրամասը ութը շերտի զատուած, կ'ամբողջացնէ իւրաքանչիւր ծաւալի ներքին մասը:

Հաղարծինի շէնքերը, որոնք կառուցուած են խաչաձեւուող (սեղանատուն), եւ չորս ազատ սիւներու վրայ հանգչող կամարներով (ժամատուն), գմբեթաւոր սրահներով (եկեղեցիներ), կրնանք կոչել «ձեւականութեան ազատ վերածնունդը» (Թ· Պոնելլի), որ կատարելագործուած է ձեւափոխելով նախաքրիստոնէականը, հարստացած նոր գաղափարներով, վերանորոգուած է արուեստի լեզուն եւ մասամբ կը սահմանեն Թ. եւ ԺԳ. դարերու հայկական ճարտարապետական մշակոյթը:

Թովմաս Արծրունի կը յիշէ Աղթամարի Արծրունեանց պալատին մէջ սրահ մը 20,8×20,8 մեդր չափերով եւ 2,8 մեդր բարձրութեամբ, որ է ըսել 1×1×1 համեմատութեամբ կառուցուած: Պատմաբանը «Թռչող» կը կոչէ այդ կամարները: Այս կառուցողական ձեւը առիթ կու տայ որ Ժ. դարու ընթացքին խաչաձեւուող կամարներու նման լուծումներ ալ երեւան գան (Ե· Ա· Օրպէլի):

Եղանակաւոր փորձառութիւններու պտուղ՝ այս շինարարական նոր ձեւը, որ չէր ճանչցուած անդրկովկասեան միւս երկիրներու մէջ, ուշ միջնադարեան շրջանին աւելի կը զարգանայ տրամաբանականօրէն: Այս զարգացումին արդիւնքը կ'ըլլան, զանազան գործածութեանց պատկանող, խաչաձեւուող կամարներով ծածկուած շարք մը շէնքեր: Հետեւեալ օրինակները ունինք նոյն շէնքերէն.- կամարները պատերուն զուգահեռական են եւ շատ պարզ (Հոռոմոսի վանք), եւ կամ կրկին (Խորակերտ, Զարի Ս· Բարթողիմէոս, Գանձասար, Մշկավանք, Տեղծուք, Սուրբ Առաքելոց): Կամարները խաչաձեւ են եւ անկիւնները բռնող (Հոռոմայր, Անիի Ս· Առաքելոցը) եւ կամ պատերու կեդրոնը (Սանահինի գրադարանը):

Նախապէս տեսնուած «Թռչող» կամարներու կառուցման ձեւը ծաւալական միաւորներուն կը պատկանին: Ծաւալային միաւորումը առիթ կու տայ ինքզինքի կրկնութեան եւ շարժարանական տարբերակներու, որոնք էական ծաւալներուն կրկնութիւնն են: Օրինակի համար Հաղարծինի եւ Հաղբատի սեղանատունները, Անիի Ս· Առաքելոց եկեղեցւոյ գաւիթը: Ուրիշ շէնքերու մէջ «Թռչող» կամարները գործածուած են դէպի վեր, նոյնպէս կրկնելով հիմնական ծաւալը իր բարձրութեամբը, որ կարելի է տեսնել Հաղբատի եւ Համազասպի շէնքին վրայ: Այս ձեւական միաւորումները ջինջ ու յստակ ներքին ծաւալ մը կազմելու ի վիճակի են, որ կազմակերպուած է համահաւասար արժէքներու կրկնութենէն: Միջնադարեան շրջանին եկեղեցական բընոյթ ունեցող շէնքերու կառոյցը վանական մեծաւորներու որոշողութիւններուն կապուած էր:

Վանքերը թէ' խաղաղութեան եւ թէ' պատերազմի ընթացքին պաշտպանուած էին ազնուականներուն կողմէ եւ իբրեւ մշակութային եւ հոգեւոր կեդրոններ կը վայելէին պետութեան նկատողութիւնը:

Եւ բացի քաղաքներէն, վանքերուն մէջ ալ էր որ կը ծաղկէին արուեստի եւ ճարտարապետութեան դպրոցները: Այս պայմաններուն մէջ է որ ծնաւ ճարտարապետին եւ վանականի փոխ-յարաբերութիւնները: Այս երկու անձնաւորութիւնները, ինչպէս օրինակի համար Նոր Կէտիկի հիմնադիր Մխիթար Գօշը եւ ճարտարապետ Մխիթար Հիւսը, յաճախ կը պատկանէին նոյն դաղութին: Միջնադարի մէջ վարդապետ կամ վարպետ տիտղոսը կը տրուէր ճարտարապետին կամ արձանագործին: Նոյն տիտղոսը կը տրուէր նաեւ վանականներուն եւ գիտնականներուն: Այս աւանդութեան հոգւով է որ քրիստոնէական շրջանին ալ շարունակուեցաւ եկեղեցւոյ եւ ճարտարապետին մէջ եղող իրերօգնութիւնը: Այն կապին մէջն է որ ծնան, վերամշակուեցան ճարտարապետական նոր ձեւեր: Միայն նոր եկեղեցիներ հիմնելու իրաւունքը եկեղեցւոյ մնաց:

# ՀԱՂԱՐԾԻՆՆ ՈՒ ԻՐ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆԸ

ԱՐՄԷՆ ՄԱՆՈՒԿԵԱՆ

«Այն ինչ որ միտքդ, հոգւոյդ ալ քննական օգնութեամբը ի վիճակի չէ ըմբռնել, աւելորդ է որ փնտռես մագաղաթներու մէջ կամ քարերու ու պղինձէ փորագրութեանց վրայ»:

ԿԻՕԹԷ

Երանի թէ կարենայինք զենիթային թըռիչք մը կատարել պատմական Հայաստանի հողամասին վրայ՝ վերջապէս պիտի կարենայինք գտնել, հողին խակական դէմքն ու հոգին: Գոյներու տարբերակներով զարմանալիօրէն ճոխ փունջ մը պիտի տեսնէինք հոն: Բազալտի սեւ հալուցքէն մինչեւ տուֆի գունատ դեղինը, բուսականութեան թունդ կանանչէն, մինչեւ լիճերու խոր կապոյտը: Անոյշ եւ իր անցեալով զօրաւոր բարձրավանդակ մը, որ կ'երկարի եւ վերջապէս կը հասնի իր գագաթնակէտը՝ Արարատ լեռը Ս· Գրական տապանի յենարանը:

Եւ ճիշդ այս հողի եւ քարի ծովին եզերքը, որ քանի անգամներ փորձեցին լոյս աշխարհ հանել տապանի մնացորդը, դուրս կը ցայտեն շատ աւելի դերբնական մնացորդներ: Անոնք բիւրեղեայ քարի նմանող մարմիններ են, յաճախ յստակօրէն ճանաչելի, ուրիշ անգամներ, գիտակցաբար գողտրիկ, կարծես բնութեան արտադրումը ըլլային: Անոնք հայկական ճարտարապետութեան պատմական կոթողներն են՝ եկեղեցիներ, վանքեր, խաչքարեր: Մօտէն դիտելով այս բոլորը, որոնք իբրեւ անգտանելի եւ արժէքաւոր մարգարիտներ կը ներկայանան մեր աչքերուն, զետեղուած ա-

ռանձնաշնորհեալ ժամանակներու հեղեղի մը ընթացքին, որ քաշուելով հոն լըքած են պատմական կոթողները զարմացած՝ նախ քան զարմացնելը: Այլեւս վերջնականապէս հեռացուած իրենց բընական շրջապատէն եւ կարծէք դատարկուած նաեւ իրենց կեանքէն: Պարպուած պատեաններ, վերջնականապէս կորսուած իրականութեան մը հետքերը:

Կ'արժէ յիշել հոս Աստուածաշունչի մէկ հատուածը – Եզեկիէլ, գլ. Լէ. 1–7 – իր աստուածաբանական և գրական արժէքին համար. «Տիրոջ ձեռքը իմ վրաս եղաւ, եւ Տէրը զիս հոգիով հանեց ու զիս դաշտին մէջ դրաւ, եւ դաշտը ոսկորներով լեցուն էր: Ու զիս անոնց քովերէն պըտըտցուց չուրջանակի եւ ահա անոնք դաշտին երեսին վրայ խիստ շատ էին, եւ ահա անոնք խիստ չորցած էին:

Ու ինծի ըսաւ, Որդի մարդոյ, այս ոսկորները կրնա՞ն կենդանանալ. ու ես ըսի. Ո՛վ Տէր Եահուէ, դուն գիտես: Եւ ինծի ըսաւ. Այս ոսկորներուն վրայ մարգարէութիւն ըրէ ու անոնց ըսէ. Ո՛վ չորցած ոսկորներ, Տիրոջ խօսքը մտիկ ըրէք: Այս կ'ըսէ Տէր Եահուէ այս ոսկորներուն. Ահա ես ձեր մէջ հոգի պիտի դնեմ, ու պիտի կենդանանաք. ես ձեր վրայ ջիղեր պիտի դնեմ, ու ձեզ միսով պիտի պատեմ, ու ձեզ մորթով պիտի ծածկեմ, եւ ձեր մէջ շունչ պիտի դնեմ, ու պիտի կենդանանաք. եւ պիտի գիտնաք թէ ես եմ Տէրը»:

Հակառակ որ հոս ուղղակիօրէն կը խօսուի երկնային շնորհքի մը մասին եւ փոխաբերաբար պատկերն ալ կը ներկայացուի, կարելի է ըսել թէ այս քարերուն իմաստը եւ ոչ միայն զուտ իմաստը, այլ զարմանալի այժմէութիւնը մեզ կը տանի վերապրելու՝ մեր ներքին, յանգած ու տկարացած ներդաշնակութեանը վերածնունդին:

Կը զարմացնէ հետեւաբար այն խոր եւ երախտապարտ աշխատանքը որ տարուած է Թորամանեանէ մինչեւ Ստրշիկովսքի եւ մինչեւ մեր օրերը, որոնք այս իրականութեան մօտեցած են միայն փաստելու, վերականգնելու, բծախնդրօրէն թուականները որոշելու եւ ճշգրտօրէն զանազանելու համար. բացակայ է սակայն այդ աշխատանքներուն մէջ իրական կարեւորութիւններու մօտեցումը եւ նուրբ բարեմասնութիւններու ճանաչումը: Տարբեր բառերով, անգամ մը եւս կրկնուած է այն տխուր չփոթութիւնը՝ որ կը ծնի երաժշտութեան եւ զինքը արտադրող երաժշտական գործիքին միջեւ: Գործիքը որ մանրամասնօրէն զննուած է իր ամէնէն կողմնակի մասերովը և նոյննացուած՝ արտադրուած երաժշտութեան հետ, որ բնականաբար բոլորովին տարբեր իրականութեան մը կը համապատասխանէ:

Այս բոլորը սակայն չի զարմացներ ինչպէս կ'ըսէ Պուրխարտ. «Երբ փորձառական արդի գիտութիւնը նիւթերու մանաւանդ քանակային երեւոյթը նկատի կ'առնէ հեռացնելով զանոնք, կարելի պայմաններու մէջ, իրենց որակային նկարագրէն, աւանդական գիտութիւնը որակն է որ կ'արժէքաւորէ, անկախաբար անոր քանակային յարաբերութենէն: Աշխարհը կերպասի մը նման է. հիւսուած՝ թեզանէ մը եւ հանգոյց մը: Թեզանի դերձանը որ յաճախ հորիզոնական է կը խորհրդանշէ նիւթը, եւ մանաւանդ անմիջականօրէն պատահական կապերը, որոնք տրամաբանականօրէն ստուգելի են եւ քանակով սահմանուած, հոն ուր հանգոյցի ուղղաձիգ դերձանը կը համապատասխանէ նիւթերու որակային էութեան: Արդի դարու գիտութիւնն ու արուեստը կը զարգանան հորիզոնական թեզանի ուղղութեամբ, իսկ միջնադարեան գիտութիւնն ու արուեստը, զարգացած էին վերանցական կերպով ուղղաձիգ ինչպէս հանգոյցը»:

Հետեւաբար, այս իրականութեամբ կորսուած բնազանցական հանգոյցը անկարելի կը դարձնէ նաեւ ճարտարապետական արտայայտութեան ամէն իսկական ըմբռնում, բոլորովին ձեւափոխելով այն աւանդութիւնը՝ որ իբր թթխմոր կը ծառայէ այս քարերուն մէջ:

Ի՞նչ իմաստ պիտի ունենայ հետեւաբար անցեալի ուսումնասիրութիւնը եւ վաւերագրութիւնը եթէ պակսի կամ սառեցուի աւանդութեան զեղումը:

## ՍՐԲԱԶԱՆ ՏԱՐԱԾՈՒԹԵԱՆ ԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Մօտենանք, դարերու ընթացքին այս կառոյցներու ծագումին, երբ հիմը դրուեցաւ պատմական Հայաստանի եկեղեցիներու եւ վանքերուն բազմաձայն խմբերգին: Բոլոր այս զանազանեալ ծաղկումը, սկսեալ իր առաջին արտայայտութիւններէն, որոնք կը պատկանին Դ., Ե. եւ Զ. դարերուն մինչեւ Ժ., ԺԱ., ԺԲ. եւ ԺԳ. դարերու աւելի բարդ համալիրները, իրեն իբր յայտագիր ընտրած է անսահման վերանցականը թարգմանել մարդկային արտայայտութեամբ:

Նպատակը «Աստուծոյ տունը» կառուցանելն է, «Երկնքի դուռը» (Գիրք Ծննդոց, ԻԸ. 17): «Տաճարը խորհրդաւոր "երկինքի" մը կերպընկալ պատկերը կը ներկայացնէ այն թագաւորութեան՝ ոռ բոլոր մարդոց կը յղէ իր փափաքը, որպէսզի անոնք դառնան "կենդանի քարերը" տիեզերական տաճարին՝ ուր ամէն ինչ կը շնչէ, Տիրոջ փառքը կ'երգէ» (Եւտոքիմով):

Հոս Տէրը կը վերանորոգէ իր մարդեղութեան խորհուրդը. մարդ կը դառնայ որպէսզի մարդը կարենայ աստուածացնել բոլոր իր կեանքը, նիւթական ծաւալովը միասին: Այսպէսով կը ձեւանայ սեղմ ուժականութիւն մը իջնողի եւ վերացողի միջեւ: Հոգին կը մտնէ նիւթին մէջ եւ նիւթն ալ հոգեկան արժէքներ կը ստանայ:

«Տաճարը յաւիտենականութեան մէկ մասնիկն է՝ որ կը քարոզէ իր ներկայութեամբը եւ կը հրաւիրէ արմատական «մեթանոյա»յի մը. հետեւաբար մօտեցող հանդիսատեսը կրնայ զննել անոր զանազան մասերը, ստուգել ճարտարապետութիւնը, տալ իր դատողութիւնը արուեստական արժէքին վրայ, բայց անոր համար միշտ փակ գիրք մը պիտի ըլլայ: Մինչեւ որ ամէն քար եւ ամէն ձեւ սկսին խօսիլ, մինչեւ որ ամէն ինչ երգի պաշտամունքի մը վերածուի, պէտք է ըմբռնել անոր խորհրդաւոր կեանքը, իր գիծը եւ իր տարածութեան կազմակերպչական սկզբունքը՝ որով կը տարբերի իր շրջակայքէն:

Եկեղեցւոյ մը օծման ծէսը, մեծ պերճախօսութեամբ կ'արտայայտէ այս սրբազան ծաւալին կառուցումը: Ան կ'անջատէ որոշ մակերես մը, աշխարհիկէն կը մաքրագործէ եւ կը խնդրէ Սուրբ Հոգւոյն էջքը, որ, ուրիշէ տեղ մը կը վերածէ երկնային երեւման վայրի, Սուրբ Լերան, Տիեզերքի կեդրոնին... (Եւտոքիմով):

Ամէն բան խորանի եզերքն է՝ ուր կը կեդրոնանայ որ Քրիստոսի դէմքն է, մինչդեռ եկեղեցւոյ կառոյցն ու կերպարը տիեզերքի ծննդեան կը համապատասխանեն:

Կողմնորոշութեան ծէսը կը ձուլէ իր մէջ արեգակի գունտը եւ երկրային հիմնական քառանկիւնի չորս կողմերը, մինչեւ իրենց ամենաբարդ ծաւալային վերահաստատումը՝ հիմնական քառանկիւնին և տարբեր գնտաձեւ նիւթերու միջեւ:

Քրիստոսի զոհաբերումը շարունակաբար ներկայ է խաչի խորհուրդին մէջ, որ երբեք չի մնար իբր պարզ խորհրդանիշ մը: Ան ներքնապէս կը դրոշմէ սոյն ճարտարապետութեան քարերը, առաջնորդելով բոլորը դէպի հոգեւոր ձգողութեան ասպարէզը՝ իրագործելով զգայունի եւ խոր իրականութեան հաշտութիւնը անզննելիին ու անչափին:

Աւանդութեան ոյժը այս վայրը կ'օժտէ խոութեամբ՝ զոր չի բաւեր միայն «տեսնել», այլ պէտք է մեր ներաշխարհին զուգել ունկնդրելով պաշտամունքի երկնային ձայնը:

Այն ձգողական ոյժը՝ որ ոտքի կը պահէ այս տարածութիւնները, բոլորն ալ դէպի արեւելք դարձած եւ դէպի վեր ձըգուած իրենց հիմերէն մինչեւ գմբէթներու գագաթը, վկայելով շինարարական շնորհի մը, որ իր համաչափութեան իբր անդրանիկ հիմ ունի «կողմնորոշումը» սրտին՝ որ կը սպասէ Աստուծոյ վերադարձը: «Մի՛ խղճիւ եւ գայթակղութեամբ, մի՛ նենգութեամբ, խորամանկութեամբ, մի պատրանօք եւ խաբէութեամբ, մի՛ երկմտութեամբ եւ մի՛ թերահաւատութեամբ: Այլ ուղիղ վարուք, պարզ մտօք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լցեալ սիրով, լի եւ առաւելեալ ամենայն գործովք բարութեան»: Կայ հետեւաբար կատարեալ ներդաշնակութիւն մը տարածութեան ընտրութեան, շարժումներու եւ իրենց իմաստաւորման միջեւ:

## ՀԱՂԱՐԾԻՆ

Հիմա կը փափաքինք մասնաւորապէս Հաղարծինի մասին խօսիլ, որ վերոյիշեալ օրինակներուն մէջ ամենացայտունն է: Անպայման պէտք է մօտենալ անոր, ձերբազատուած մեր բոլոր նախապաշարումներէն, լռութեամբ անտառի ճամբով: Քալելով լեռ բարձրանալը կ'օգնէ արդէն աւելի լաւ հասկնալու ամէն ինչ. անտառի ճամբան ուր արեւի լոյսը դժուարաւ կը թափանցէ, երկնքի շարունակեալ փնտռտուքին առիթ կ'ընծայէ: Հոս, ուր մեր հայեացքը շարունակեալ փնտռտուքի մը մէջ է, յանկարծակի կը հանդիպի երկնաձիգ գմբէթներուն: Անմիջական տեսքը սակայն շուտով ինքզինքը չի յայտներ, պէտք է միշտ աւելի մօտենալ, ճարտարապետական ծաւալին մէջ թափանցել, հասնիլ անոր սիրտը: Միայն այսպէս կրնանք հասկնալ եւ ըմբռնել թէ այդ ճարտարապետութիւնը պատմութեան կը պատկանի միայն անուղղակի կերպով: Գմբէթներու գմբեթարդներու քարէ երկնքին տակը, որ կը շրջապատէ խորանը, կը լսուի արարողութիւնը... «Խորհուրդ խորին, անհաս, անսկիզբն...»: Հոս, պատարագի խորհուրդին մէջ է որ ծնած են այս ճարտարապետական ծաւալները, որոնցմէ կը շարունակէ արտահոսիլ հոգեւոր ոյժը: Հոս ժամանակը կանգ կ'առնէ եւ կը բացուի յաւիտենականը՝ անսկիզբ եւ անվերջ:

Հաղարծինի ծննդեան տոմարը ուրիշ տեղ է հետեւաբար, տրամաբանական նշաններու եւ ծիսական կեանքին մէջ, մինչ ճարտարապետական ներկայացումը ուրիշ բան չէ եթէ ոչ աստուածայայտնութեան խորհուրդին ձայնաւոր եւ տեսանելի ընդլայնումը, որ կը կատարուի խորաններու վրայ: Հաղարծինը հետեւաբար, իր ամբողջականութեամբ ու նաեւ իր մասնակի կառոյցով Աստուծոյ ներկայութեան պահպանակն է: Բարձրեալը մտածելու տեղ է ան: Հաղարծինը իր կառուցողներու մտային կարողութեան ծնունդը չէ՛ հետեւաբար, այլ՝ արդիւնքն է աստուածային իսկական մտածելակերպին: Անոր կառոյցը ի վիճակի է աստուածային զոհողութեան ծաւալ մը տալու:

Ուստի ծէսը եւ իր օրէնքներն են, որոնք, կառուցողական օրէնքը կը հաստատեն եւ որ պատասխանատուներն են, ծաւալներու բարդ կազմաւորութեան: Մէկն է որ հիւսած է այս միութիւնը, երկրի եւ երկնքի միջեւ:

Հոս կարելի չէ՛ այլեւս զանազանել, լին ու դատարկը, ներքինն ու արտաքինը, երկինքն ու երկիրը, ամէն ինչ տարօրինակաբար ձեւափոխուած է Թաբօրի լոյսին նման: Իկոններու անթափանց լոյսն է որ կը յաջողի քարերէն իրենց ծանրութիւնը խլել եւ ճարտարապետական կազմը ազնուացնել:

## ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ

Պատմական Հայաստանի այս մարգարիտները վերջ մը ունեցած են սակայն: Նուրբ անկում մը որ կը շարունակուի դարերու ընթացքին եւ վերջ կը գտնէ 1800ին: Հոգեւոր հորիզոնը կը մթագնի վերջնականապէս. նախ կը կորսուին իրականութիւնները, վերջն ալ անոնց իմաստը:

Նախատեսուած երկու իրականութիւնները՝ տեսանելին եւ անտեսանելին, ժամանակաւորը եւ յաւիտենականը, երկրայինը եւ աստուածայինը, որոնք նախ գողտրիկ կերպով իրար միացած էին, կը պատրաստուին իրարմէ զատուիլ:

Շարունակաբար յիշուած թէ՛ գրաւոր եւ թէ բերանացի աւանդութեան մէջ, կը վերապրի սակայն այս անփոփոխ շարունակութիւնը յաճախ իր ձեւականութեան մէջ, մանաւանդ սփիւռքի շրջանին, երբ ծննդավայրին հետ խզուած կապերը, ամէն հայու մէջ ծնունդ կու տան սըրտաճմլիկ տառապանքներու:

Անոնք որոնք դեռ կը շարունակեն տալ այս բոլորին, իրեն նախնական իմաստը, Տիրոջ հոգւոյն մօտը մնացողներն են: Այսօր անգամ կոթողներու մնացորդներուն վրայ, դժուար չէ հանդիպիլ, տարեց հաւատացեալներու, որոնք տաճարի սեմէն ներս կը մտնեն, համբուրելով մուտքի մնացորդները եւ ներսը կը մնան ամփոփ աղօթելու:

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹԵԱՆ ՄՕՏԵՑՈՒՄԸ

Եւ ահաւասիկ կը բացուի քննադատութեան եղանակը. բնորոշուած անոնցմէ՝ որոնք կը «չափեն» միայն «եղելութիւնները», առանց նկատի առնելու հոգեւորը որ մաս կը կազմէ ամբողջութեան:

Իրական է այլեւս միայն ան՝ որ տրամաբանութեան մէջը կրնայ հասկնալ եւ չափել: Դրութեան, ոճն ու լեզուն կը կորսուին, կը կորսուի այն կապը որ գոյութիւն ունի տարածութեան եւ կեանքի միջեւ: Կը մնայ միայն պատմական լուծումը, դժբախտաբար, նսեմացնող եւ արտաքին, միայն «եղելութիւններու» վաւերագրութեամբը մտահոգուած: Այն ինչ որ նշանաբանութիւն է կարելի չէ ամբողջովին խտացնել. որովհետեւ միշտ փոփոխական բան մը ունի իր մէջ, որ անհաս է եւ անզննելի: Եւ ճիշդ այս է որ գիտական տրամաբանութեան անհարազատ կը թուի եւ որ կը սիրէ «յստակը», «փաստուածը» եւ «ճշգրիտը» (Քիրկեկարտ):

Կէօթէն գիտնականներուն հետեւեալ ձեւով կը գրէ. «Այն որ դուք չէք դպչիր շատ հեռու է ձեզի համար. այն որ դուք ձեր ձեռքերուն մէջ չունիք, գոյութիւն չունի ձեզի համար, այն որ ձեր հաշիւներէն կը վրիպի՝ կեղծ կը համարիք, այն որ դուք չէք կշռեր՝ ձեզի համար ծանրութիւն չունի եւ այն որ չէք կրնար դրամի վերածել, ըստ ձեր արժէքաւորումին բան չ'արժեր»: Հակառակ այս բոլորին, քննադատութիւնը շատ հետա-

քրքրական է քանի որ կը ձերբազատուի կարգ մը մոռացութիւններէ եւ կը սկսի փնտռտուքի ճամբան։

Շատ լուրջ դրութեամբ մը կը կարգաւորուին շէնքերը քննադատութեան գործը չսկսած։

Շուտով կը զգացուի թէ ձեռքի տակ գտնուող նիւթը շատ արժէքաւոր է եւ գուցէ Արեւմուտքի վրայ ալ ազդեցութիւններ թողած։ Կը հասնինք միշտ աւելի լուրջ խորացումներու, որոնք մէկ կողմէն նոր հորիզոններ կը բանան արուեստի պատմութեան բնագաւառէն ներս, միւս կողմէ ալ կ'ընդլայնեն համաձայնութեան եւ անհամաձայնութեան եզրերը։

Այս նիւթին շուրջ արտադրուած վաւերաթուղթերը յաճախ անբաւարար են եւ ոչ ամբողջական։ Անճշտութիւններն ալ չեն պակսիր, նկատի առած նաեւ այն խիտ կապը որ գոյութիւն ունի, հողամասի եւ ճարտարապետութեան մէջ։ Շատ քիչեր, դժբախտաբար կարելիութիւնը ունին այս դրութեան իրական դէմքը բացատրելու։ Գիտական բացատրութիւնը հետեւաբար շատ յաճախ խեղճուկ կը մնայ։

Այս լոյսին տակ, «կոթողները» անցեալի խորհրդանիշներու եւ զուտ յիշատակներու վերածուած են։ Այլեւս չի մատուցուիր «Խորհուրդ խորին, անհաս, անսկիզբ»ը, որ մարդկութեան կ'օգնէ վերածնիլ երկրէն դէպի երկինք, ան կը գործածուի միայն կարոտի տօնակատարութիւններուն ընթացքին։ Մարդն է որ այլեւս կը գրաւէ աստուածային տեղերը։ Այն տեսակէտը որ ծնունդ տուաւ այս բոլորին, ամբողջովին եւ տխրօրէն տեղափոխուած է։

Անբաւարար է ներկայիս որ փնտռտուքի շրջանակը լայննայ, որ թուանշաններն ու լուրերը բազմապատկուին եւ հարցերը զննուին։ Այս բոլորը կը վերածուի դժբախտաբար անկարեւոր լուրերու անպէտ դրութեան մը։

Ճանաչողութիւնները կը բազմապատկուին, սակայն կը կորսուի իրական ճանաչողութիւնը, ինչպէս կը գրէր Ժասփէրի թէ՝ «եթէ օր մը բոլոր վաւերաթուղթերը կարելի ըլլայ հաւաքել, հաւասարապէս կորսուած եւ կործանած պիտի ըլլայ իսկական աւանդութիւնը»։

## ԻՍԿԱԿԱՆ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ ԿԵՆԱՐԱՐ ԱՒԻՇԸ

Աւանդութեան հոսանքը կը բացակայի ըստ մեզի ժամանակակից քննադատութեան մէջ՝ որ կը շարունակէ գործել իր բոլոր ուժովը, անցեալի ամէն եզական պատկերին մէջ, իբր գողտրիկ կարողութիւն։ Անտեսելով՝ լինելութեան եւ իրականութեան կապը չի խզուիր։ Որովհետեւ այն խորհուրդը որ այս իրականութիւնները կ'ողջունեն «անսկիզբ» են ու նաեւ անվերջ։

Անկասկած է որ պատմագրութիւնը կը հակի յաճախ, միայն պատահարները, արտադրութիւնները գրանցնելու եւ խորապէս կը տարբերի աւանդութենէն որ կը թափանցէ նիւթական եւ գրաւոր աղբիւրներէն անդին, ճոխաբար կը սնանի բերանացի մշակոյթով եւ կեանքի փորձառութիւններով, բայց ամէն բանէ առաջ «վերէն» տրուած է։ Տարբեր բառերով՝ աւանդութիւնը ընդյատակեայ գետ մըն է, գողտրիկ ու ծածկուած, որ անցեալի բոլոր եղելութիւններուն տակէն կը հոսի։ Եւ եթէ պատմագրութիւնը եւ իրմէ վերջ ալ քննադատութիւնը, անոր հետքերը կորսնցնեն, երբեք կարելի պիտի չըլլայ անոր ձայնը խափանել։

Եթէ ներկայիս կը փափաքինք այդ ճարտարապետական համոյթին «վերանորոգումը» պահանջել, որ ժամանակը մաշեցուցած է, շատ աւելի անմիջական կը դատենք նաեւ իսկական աւանդութեան «վերանորոգումը»։ Որովհետեւ իրենց հոգեւոր որակէն անջատուած կոյր իրականութիւնները վաւերագրելը շատ աւելի ծանր գործ է քան անոնց Ֆիզիքական կործանումը։

Հետեւաբար կը կարծենք թէ պէտք է փոխել այն «ձեւը» որ մեզ այս իրականութիւններուն հետ դէմ դիմաց կը դնէ։ Ջանալով զանազանել պարզ պատմական եղելութիւնները տարբեր զուգահեռ պատմութիւններէ, որոնք անոնց մէջ հոսող կեանքը կը ներկայացնեն։

Պէտք է եւ կենալ զուտ մշակութային շարժումներէն եթէ նախ կարելի չէ՛ եղած, համեստօրէն «խորհուրդին» մօտենալ, հակառակ որ ան «անհաս» իրականութիւններ կը պահպանէ իր մէջը։

Բաւարար է լոյսին աչքերը չխլել, որովհետեւ վստահաբար հոս լոյսը չէ որ կը պակսի, այլ՝ պակսողները մենք ենք։

Այդ քարերը միայն դաս մը չէ որ կու տան մեզի. անոնց մէջ «ներքին» մը կայ որ զուտ երկրաչափական ծաւալ մը չէ։ Այս քարերուն մէջ կայ բան մը որ անցեալին մէջ էր եւ ներկայիս գոյութիւն չունի, բան մը որ մենք ալ ունինք իբր հայ թէ՛ մեր մէջը եւ թէ մեզմէ դուրս միատեղ։ Ան նիւթէ շինուած է, եւ սակայն անոր մէջ չէ որ վերջ կը գտնէ, որ լուռ է եւ նոյն ատեն զարմանալիօրէն խօսուն։ Բան մը որ կեանքի ու մահուան միջեւ է։ Աւանդութեան զարկն է որ կը հեռանայ եւ սակայն կ'ապստամբի մահուան դէմ եւ կը յայտնուի մեր մէջ գողտրիկ եւ յուսահատ։ Կեանքի եւ մահուան այս միանգամայն ներկայութիւնը մեր միտքը կը բերէ քարացած մարդոց սոսկալի դիմագիծը, որոնք վերջերս պեղումներու ընթացքին յայտնուեցան Պոմպէիի մէջ (Ք. ա. 79 թուական)։

Այնքան անակնկալօրէն շանթահարուած են անոնք, որոնց դիրքը այսօր անգամ կեանքի նմանողութիւն մը կը կրէ, հակառակ անոր որ այլեւս կեանքը իրենց մէջ բացակայ է։ «Անոնց մէջ մահը կը շարունակէ մնալ, ներկայի մը ընթացքին որ անվերջ է, ուր ապրելու փափաքը եւ "ըլլալ"ու ներկայութիւնը այն ծարաւն է, որուն յոյսովը կ'ապրի մարդը...» (Ցապրոյ)։

Այս զուգահեռականութիւնը մեզի կը սորվեցնէ թէ իրական աւանդութիւնը շատ խոր կապեր ունի մարդուն եւ Աստուծոյ յարաբերութիւններուն հետ, որուն ներկայացուցիչներն են այս կառոյցները։

Այս նիւթին շուրջ շատ հետաքրքրական է նաեւ Քուատրելլիի գաղափարը. ան կը յարէ թէ միակ շինիչ դիրքը որ կրնանք ունենալ անցեալը ներկայացնող կառոյցներուն հանդէպ, անոնք պահպանելն է, եւ առիթը տալ անոնց, ժամանակի ընթացքին շարունակաբար ապրելու։ Հետեւաբար միայն զուտ գիտական դասակարգերու բաժնելով եւ թուագրելով չի բաւականանալ։

Զմոռնանք որ գիտական «ճշգրտութիւնը» ուրիշ բան չէ եթէ ոչ բաժնել իրականութիւնը նախապէս ընտրուած մասնիկներու։ Եւ վստահ կերպով ապրող նիւթի մը իրական անձնականութիւնը երբեք իր ամբողջութեամբ պիտի չյայտնուի մեզի։

Անցեալի պատահարները արդէն միայն որոշ կարելիութիւններ կը յայտնեն մեզի։ Իսկ ուրիշ կարելիութիւններ, որոնք հասունցած են եւ կը սպասեն ապագայի մը՝ ինքզինքնին մեզի յայտնելու համար։ Այս ուղղութեամբ կը կրկնենք, թէ աւանդական կառոյցներու նիւթական

պահպանումէն աւելի, պէտք է անոնց արմատները հետազօտել միացնելով անոնք, այն ստեղծարար հոգիին որ զիրենք ծնաւ: Վերադարձնել անոնց «կենարար շունչը» որպէսզի վերջ գտնէ իրենց թափառումի վիճակը եւ անոնք վերագտնեն իրենց ծննդավայրի հողը (աւելի ճիշտ ծննդավայրի երկինքը):
Այսպէսով միայն, անոնք մեր պատմութեան «հանդիպակի քարերէն» պիտի վերածուին թէ՛ հայկական եւ թէ համաշխարհային աւանդութեան «նշանաքարերուն» եւ մեզի պիտի հետեւին մեր պանդուխտի աստանդական ճամբուն վրայ:

## ՊԱՏՄԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

Հաղարծինի վանքին կառուցման թուականը անյայտ է: Կը պակսին այդ ուղղութեամբ պատմական տուեալներ եւ վկայագրութիւններ: Միակ լուրերը որ մեզի հասած են՝ ունինք Կիրակոս Գանձակեցիի (1202–1271) գրութիւններէն: Պատմիչը Նոր Կէտիկի Ս. Աստուածածին եկեղեցւոյ օծման հանդէսը նկարագրած ատեն (1179) կը գրէ թէ այդ արարողութեան ներկայ էր նաեւ Խաչատուր Տարօնեցին՝ Հաղարծինի վանահայրը եւ ծանօթ երաժիշտ: Կիրակոս Գանձակեցին իր «Պատմութիւն Հայոց»ին մէջ կը յիշէ թէ Խաչատուրին կը պարտինք Հաղարծինի վանքին վերաշինութիւնը եւ ընդլայնումը: Այս վկայութեան հիման վրայ գիտնականներու մօտ կը դերակշռէ այն գաղափարը թէ Հաղարծինի հիմնարկութիւնը «Նոր Կէտիկ»էն (Գոշավանք) աւելի առաջ պէտք է եղած ըլլայ՝ Ժ. եւ ԺԱ. դարերու միջեւ:

### ԺԱ. դար

Հաղարծինի մէջ Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ հիմնարկութիւնը:
**1047** – Թուրք-սելճուքեան արշաւանքի սկիզբը:
**1048** – Թուրք-սելճուքեան երկրորդ արշաւանքը եւ Բարձր Հայքի Բասէնի դաշտին, Կարինի (Թէոդոսուպոլիս) գրաւումը Արծնի կործանումը (տես Կեդրենոս):
**1064** – Ալփ Արսլան կը գրաւէ կեդրոնական եւ հիւսիսային Հայաստանը, Աղուանքը եւ Ախալքալաքը: Անին կ'իյնայ: Տաշիր Պորակէտը կ'արշաւէ դէպի Վրաստան եւ Հայաստան: Հաղարծինի առաջին վանքին կործանումը:
**1071** – Բիւզանդական զօրքերը Մանազկերտի մէջ կը պարտուին: Զաքարեան իշխաններու նախաձեռնութեամբ Հաղարծինի վանքի վերակառուցման սկիզբը: Կը կառուցուի նախնական եկեղեցին եւ Ս. Աստուածածնի գմբեթաւոր սրահը:

### ԺԲ. դար

Այս դարու վերջաւորութեան Արծրունիները եւ Զաքարեանները Հայաստանի հիւսիս-արեւելքը կը վերականգնեն իրենց իշխանութիւնը: Հաղարծինի մէջ վերաշինութեան աշխատանքները կը վերսկսին: Վրաստանի թագաւոր Գէորգ Գ.ի հրովարտակով արշաւողներու կողմէ կործանած Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին կը վերակառուցուի: Կառուցման աշխատանքները առաջ կը տարուին Խաչատուր Տարօնեցի վանահօր եւ Սուքիաս վարդապետի օգնութեամբ: Գէորգ Գ.ի նոյն հրովարտակով վանքին կը շնորհուի Ապասաձորի, Գուրտեվանի, Տանձուտի եւ Քորայրի կալուածները: 1184ի թուակիր Ս. Ստեփանոսի եկեղեցւոյ մէջ գտնուող արձանագրութեան մը համաձայն, եկեղեցին կառուցող վարպետները մեծամասնութեամբ Ապասաձորի բնակիչներն էին, որոնք Հաղարծինի շէնքերուն հիմերը դրին: Գործածուող դեղնագոյն քարը, 11 քմ. հեռու գտնուող հանքէն կը բերուէր, Հաղարծինի հիւսիս-արեւմուտքը: Վանքը կառուցող իշխաններու կարգին կը յիշուի Սարգիս Մեծ, Զաքարէ եւ Իվանէ Զաքարեաններու հայրը, Թիֆլիսի էմիրը, վրացական դուքսերու ամիրսպասալարը եւ Մահկանաբերդի «իշխաններու իշխան»ը:
**1080** – Ռուբէնեանները Կիլիկիոյ մէջ կը հիմնեն Հայոց թագաւորութիւնը:
**1085** – Յովհաննէս սարկաւագ, Անիի մէջ բարձրագոյն վարժարան մը կը հիմնէ:

### ԺԲ. դարու վերջը

Հայոց նոր խազերու գիւտը ընդ Խաչատուր Տարօնեցի, Հաղարծինի մէջ երգի եւ երաժշտութեան դպրոց մը կը հիմնէ: Այս շրջանին երաժշտութեան դպրոցներ գոյութիւն ունէին Տաթեւի, Անիի, Վաղարշապատի, Հաւուց Թառի, Վանտէնի (Կիլիկիա), Սանահինի եւ Կարոսի (Էրզրում) մէջ:
**1096-1099** – Առաջին Խաչակրութիւն:

### ԺԲ. դար

Պատմագէտ Ստեփանոս Օրբելեանի համաձայն (1250–1305) Զաքարէ եւ Իվանէ իշխանները, Կայէնի հողամասը կը նուիրեն Հաղարծինի վանքին:
**1184** – Վրաստանի գահը կը բարձրանայ Թամար թագուհին: Սելճուքներու դէմ ուղղուած ազատագրական պայքարը կը վերսկսի: Այս շրջանին Հայաստանի եւ Վրաստանի մէջ արուեստի եւ գիտութեանց վերածնունդ մը ծայր կու տայ: Նոր վարչական ձեւեր գտնելու փափաքներ կը ծնին աւելի հաւասարակշիռ եւ ճիշտ ընկերութիւն մը հիմնելու միտումով, ազգայնամոլութեան եւ կրօնական տարբերութիւններէ ձերբազատում: Հայաստանի մէջ Քաղկեդոնական աղանդը կը տարածուի: Վաղարշակերտի, Անիի եւ Կարսի մէջ կը ծնին նոր ժողովրդապետութիւններ: Հնէվանքի, Կուրտանի, Վանավանքի, Քորայրի, Ախտալայի վանքերը Քաղկեդոնականութեան կը հետեւին ծնունդ տալով Վրա-հայկական մշակութային զուգահեռականութեան մը:
**1192** – Զաքարէ Զաքարեան, վրացական դուքսերու ամիրսպասալար կ'ընտրուի, իսկ իր եղբայրը Իվանէ՝ վրացական թագաւորութեան գանձապահ:
**1194** – Ս. Գրիգոր եկեղեցւոյ մօտ գտնուող եւ կաթողիկէ կոչուած փոքր եկեղեցւոյ հարաւային մուտքին վրայ կը գտնուի արձանագրութիւն մը որ կը յիշատակէ եկեղեցւոյ ինչպէս Խալթի կողմէ կառուցուած ըլլալը, որ Հարպի որդին էր, երբ Խաչատուր Տարօնեցին ալ Հաղարծինի վանահայրն էր:
**1196-1203** – Ամբերդի եւ Անիի բերդերը, Գանձակի եւ Արտպատականի գաւառները կ'ազատագրուին սելճուքեան տիրապետութենէն:

### ԺԲ–ԺԳ. դար

Զաքարէ եւ Իվանէ իշխանները, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ ժամատունը կառուցելու հրահանգ կու տան: Նոյն շրջանին կը պատկանի ժամատունի հարաւային եզերքին զուգահեռ գտնուող Կիւրիկեան թագաւորներու դամբանը, որ կը պարունակէ երեք գերեզմանաքարեր, մէկը Սմբատ թագաւորին պատկանող, իսկ միւս երկուքը կը մնան անստոյգ: Կիւրիկեաններու երկրորդ դամբան մը կը գտնուի Հաղբատի մէջ, Մա-

սամ Թագուհիին կողմէ ԺԳ. դարուն կառուցուած:

**1204** – Զաքարէի փափաքով եւ քաղկեդոնական ու միաբնեայ դաւանանքները հաշտեցնելու նպատակով Լոռիի մէջ կրօնական ժողով մը կը գումարուի, երկրորդ մըն ալ տեղի կ'ունենայ 1205ին Անիի մէջ:

ԺԳ. դար

Այրիվանքի, Հաղարծինի, Սանահինի, Հաղբատի եւ Գոշավանքի բարձրագոյն վարժարաններուն մէջ կը տեսնուի մեծ յառաջդիմում մը ուսման գետնի վրայ:

**1212** – Զաքարէի մահը եւ վրացական թագաւորութեան վրայ Իվանէի «Աղապէք» կարգուիլը:

**1220-1222** – Մոնղոլական արշաւանքներու սկիզբը:

**1226** – Ճալալէտտին կը գրաւէ Գանձակը, Լոռին եւ Թիֆլիսը:

**1232** – Այս թուականին կը հանդիպի Հաղարծինի մետաղեայ կենդանաձեւ հսկայ եռոտանին (350 քկ.) Զոսիմոս վարդապետին կողմէ նուիրուած:

**1233-1256** – Գոշավանքի նախկին վանահայրը Յովհաննէս Արամանեցի Հաղարծին կը փոխադրուի: Ս. Աստուածածին եկեղեցւոյ ժամատունին (այժմ աւերակ) շինութիւնը այս թուականին կը զուգադիպի:

**1240** – Կոստանդին Բարձրբերդցիի երկու կոնդակներու բանբերը Վարդան Արեւելցիի Հաղարծին հանդիպումը: Վանքը Կոստանդին Կաթողիկոսի հրահանգներուն կը համաձայնի:

**1244** – Գրութեան մը համաձայն այս տարուան ընթացքին Ս. Ստեփանոսի եկեղեցւոյ կառուցումը կը վերջանայ:

**1248** – Կիրակոս Գանձակեցի պատմիչը կը վկայէ թէ ինչպէս Յովհաննէս Արմանեցի պաշտօն կը յանձնէ Մինաս ճարտարապետին Հաղարծինի սեղանատան շինութեան: Մ (Մինաս) սկզբնատառը կը տեսնուի սեղանատան զանազան քարերուն վրայ: Սեղանատան մէջ վերջերս երեւան ելած արձանագրութիւններէն կը հետեւցուի թէ, Մինասէն զատ, կառուցման մասնակցած են Մովսէսը եւ մանաւանդ Կիրակոս վարդապետ: Գրութեան մը մէջ կը յիշուի թէ սեղանատան կառուցման ծախսերուն օգնած է նաեւ մի ոմն Քութլու: Սեղանատան հարաւային մուտքի կամարին վրայ արձանագրուած են տեկամ, տրապիս եւ կոպ բառերը: Յունարէն բառերու գործածութիւնը, մտածել կու տայ թէ այդ շրջանին Հաղարծինը քաղկեդոնական դաւանանքին կը հետեւէր (Յ. Օրպէլի): Ժամատան մէջ պահուած արձանագրութեան մը համաձայն, Հաղարծինը ԺԲ-ԺԳ. դարերուն կապի մէջ էր Վարծիայի վրացական վանքին հետ:

**1256** – Հաղարծինի աբբան՝ Յովհաննէս Արմանեցին, եպիսկոպոս կը ձեռնադրուի եւ Հաղբատի թեմին առաջնորդ կը դրուի:

**1265** – Գոշավանքի, Հաղարծինի եւ Հաղբատի եպիսկոպոս աբբահայրը ազնուական Յովհաննէս Տոպեան, կը յիշուի իբրեւ շինարար, մեկենաս եւ ձեռագիրներու մասնագէտ:

**1280** – Գլաձորի համալսարանին հիմնադրութիւնը:

**1281** – Հաղարծինի վանահայրն է Յովհաննէս. Ս. Աստուածածնի եկեղեցւոյ կառուցումը կը լրանայ: Այս եկեղեցւոյ տեղը հինէն ուրիշ եկեղեցի մը գոյութիւն ունէր, սպիտակ-դեղին քարերով շինուած 1072 թուականին եւ փլչուած ԺԳ. դարուն:

**1284** – Աստուածատուր վարդապետ, Գրիգորի հրահանգով Աւետարան մը կ'ընդօրինակէ:

**1290** – Մոնղոլներու Ոսկի-բանակայիններու արշաւանքը դէպի Հայաստան եւ Կովկաս:

Խաչքարի մը կառուցումը Ս. Աստուածածնի եկեղեցւոյ մօտերը:

ԺԵ-ԺԷ. դար

**1429** – Սարգիս վարդապետ Մաշտոց մը կը պատրաստէ:

**1624** – Յովհաննէս վարդապետ կը գրէ եւ մանրանկարներով կը հարստացնէ Աւետարան մը (Մատենադարան թիւ 6198 ձեռագիր): 1627ին նոյն Յովհաննէս կ'ընդօրինակէ ուրիշ Աւետարան մը (Մատենադարան թիւ 10157 ձեռագիր):

**1671** – Յակոբ Ջուղայեցիի կաթողիկոսութեան եւ Պարսկաստանի Սիւլէյման Շահի օրով՝ Ս. Ստեփանոսի եկեղեցիին մէջ վերաշինութիւններ կը կատարուին:

ԺԸ. դար

Պարսկաստանի Աղա Մահմէտ Շահի արշաւանքները. Կարպիի, Օշականի եւ Աշտարակի բնակիչները դէպի Զմիւռնիա կը գաղթեն: Հաղբատը գրեթէ կը լքուի, վանական կեանքը 1862էն վերջ պիտի վերսկսի:

ԺԹ. դար

Պօղոս Վրդ. Տէր-Մարգարեանի ջանքերով վանքը վերակազմելու աշխատանքները կը սկսին:

**1901** – Վերանորոգումի աշխատանքները կը շարունակուին:

**1950-51** – Ճարտարապետներ Շ. Ազատեան եւ Ն. Նալպանտեան Հաղարծինի վանքի յատակագիծերը կը պատրաստեն:

**1975-76** – Սովետական Հայաստանի Յուշարձաններու Պահպանման եւ Վերանորոգման Կոմիտէն, Ն. Թամանեանի նախագծին վրայ, Ս. Գրիգոր Լուսաւորչի ժամատան վերաշինութեան աշխատանքները կ'ամբողջացնէ:

## ՑԱՆԿ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐՈՒ

# Glossario essenziale / Essential glossary

**Amir** / Principe (titolo arabo)
**Amirspasalar** / Principe e capo delle armate
**Anapat** / Eremo
**At'abek** / Alto funzionario di corte
**Berd** / Fortezza
**Gavit'** / Ambiente quadrangolare anteposto alla chiesa, destinato ad usi civili e religiosi
**Kat'oghikos** / Massima autorità della Chiesa armena
**Kat'oghike** / Chiesa maggiore di un complesso monastico; cattedrale
**Khatchk'ar** / (khatch = croce, k'ar = pietra). Lastre di pietra che portano scolpita la croce ornata e decorata
**Ishkhan** / Principe
**Mandaturt'ukhutses** / Altissimo dignitario di corte (titolo georgiano)
**Marzpan** / Governatore
**Matenadaran** / Biblioteca
**Seghanatun** / Refettorio
**Shahanshah** / «Re dei re», titolo onorifico di origine persiana
**Türbe** / Tomba selgiuchide costituita da un volume cilindrico sormontato da una cupola conica
**Vank'** / Monastero
**Varpet** / Maestro, maestro costruttore, architetto
**Vardapet** / Dottore in teologia
**Zhamatun** / Sinonimo di *gavit'*
**Zangakatun** / Campanile

**Amir** / Prince (Arabian title)
**Amirspasalar** / Prince and commander-in-chief of the army
**Anapat** / Hermitage
**At'abek** / A highest Court dignitary
**Berd** / Fortress
**Gavit'** / Square space placed in front of the church, destined for both civil and religious use
**Kat'oghikos** / Head of the Armenian Church
**Kat'oghike** / Main church of a monastery complex; cathedral
**Khatchk'ar** / (khatch = cross, k'ar = stone). Slabs of stone, wich support ornate and decorated sculptured crosses
**Ishkhan** / Prince
**Mandaturt'ukhutses** / A highest Court dignitary (Georgian title)
**Marzpan** / Governor
**Matenadaran** / Library
**Seghanatun** / Refectory
**Shahanshah** / «King of the Kings» (Persian title)
**Türbe** / Seljuk tomb consisting of a cylindrical volume surmounted by a conical dome
**Vank'** / Monastery
**Varpet** / Master, master builder, architect
**Vardapet** / Doctor of divinity
**Zhamatun** / Synonym of *gavit'*
**Zangakatun** / Bell-tower